Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ




№ 8 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Օգտագործիր զրույցի ժամանակ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Կ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին. Հեռախոս՝ 2—52—78։

# ՄԱՅԻՍԻ 1-Ը ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆՆ Է

## ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Մայիսի 1-ը միջազգային ռևոլյուցիոն տոն է, իմպերիալիզմի դեմ, համաշխարհային նոր պատերազմի հրձիգների և պրովոկատորների դեմ պայքարելու համար միջազգային պրոլետարիատի բոլոր ուժերը մարտական ստուգատեսի ենթարկելու և մոբիլիզացնելու օր, խաղաղության, ազատության և անկախության համար բոլոր երկրների աշխատավորների պայքարի օր։

Մայիսի 1-ի միջազգային ռևոլյուցիոն տոնը ամենուրեք անցկացվեց 1890 թվին։

Մինչռևոլյուցիոն Ռուսաստանում մայիսի 1-ը տոնվում էր բոլշևիկների ղեկավարությամբ և մայիսմեկյան ցույցերը վերածվում էին պրոլետարիատի հզոր ռևոլյուցիոն ելույթների՝ ընդդեմ ցարիզմի և կապիտալիստների։

Մայիսի 1-ի ռևոլյուցիոն օրը Սովետական

Միության մեջ ամեն տարի նշվում է որպես համաժողովրդական տոն, որպես ժողովրդական տնտեսության վիթխարի նվաճումների հանրագումարի օր, սովետական պետության հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու համար աշխատավորների բոլոր ուժերը մոբիլիզացնելու օր։

Սովետական երկրի աշխատավորները 1949 թվի մայիսմեկյան տոնը դիմավորում են ստալինյան հետպատերազմյան հնգամյակը կատարելու ասպարեզում ձեռք բերած հսկայական հաջողություններով։ Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, սովետական ժողովուրդն ամրապնդում է աշխատանքային ճակատում ձեռք բերած մեծամեծ հաղթանակները և վստահ քայլերով առաջ է գնում մեր երկրում կոմունիզմ կառուցելու ուղիով։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի կատարման երեք տարվա արդյունքները վկայում են արդյունաբերական արտադրության անընդհատ աճման մասին, գյուղատնտեսության, տրանսպորտի և ապրանքաշրջանառության արագ զարգացման մասին։ Արդյունաբերական արտադրության արագ աճման շնորհիվ, արդեն 1947 թվի վերջերին ՍՍՌՄ-ն հասավ արդյունաբերա-



կան արտադրանքի նախապատերազմյան մակարդակին։ 1948 թվին արդյունաբերության արտադրանքը 18 տոկոսով գերազանցեց 1940 թվի մակարդակից։ Հնգամյակի երեք տարվա ընթացքում կառուցվել, վերականգնվել և գործարկվել է պետական արդյունաբերական մոտ 4 հազար ձեռնարկություն՝ զինված ժամանակակից առաջավոր տեխնիկայով։ Արդյունաբերական արտադրության պլանը 1948 թվին կատարվեց 106 տոկոսով։ Հետպատերազմյան հնգամյակի առաջին տարիների պլանը կատարվել է 103 տոկոսով։

1948 թվին մեծ հաջողություններ ձեռք բերեց կոլխոզային գյուղացիությունը։ Ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը ամբողջ ՍՍՌՄ-ում կազմեց ավելի քան 7 միլիարդ փութ և միայն շատ քիչ չափով ցածր էր նախապատերազմյան 1940 թվի մակարդակից։

1948 թիվը բնորոշ է նաև ՍՍՌՄ-ի կուլտուրական շինարարության հետագա զարգացումով, գիտության, գրականության և արվեստի ծաղկումով։ Ամեն տարի Ստալինյան մրցանակների շնորհումը վառ կերպով ապացուցում է սովետական արվեստի և

գրականության, սովետական առաջավոր գիտության հաջողություններն ու գերազանցությունը Արևմուտքի բուրժուական արվեստի, գրականության և գիտության նկատմամբ։

Արդյունաբերության և գյուղատնտեսության ասպարեզում մեծ հաջողություններ են ձեռք բերել նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։ Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման պլանը 1948 թվին կատարվեց 110,6 տոկոսով։ Արտադրության ծավալը համեմատած 1947 թվի հետ, աճեց 22,6 տոկոսով։ Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը 1948 թվին ձեռք բերեց նորանոր լուրջ հաջողություններ հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու ասպարեզում։
Կոլխոզները ավելի մեծ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ հանձնեցին պետությանը, քան նախորդ տարին։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերված հաջողությունները ամուր բազա են հանդիսանում աշխատավորների նյութական բարեկեցությունը անընդհատ բարձրացնելու համար։ Բանվորների և ծառայողների ռեալ



աշխատավարձը 1948 թվին բարձրացավ ավելի քան երկու անգամ՝ համեմատած 1947 թվի հետ։

Միանգամայն այլ պատկեր է ներկայացնում կապիտալիստական աշխարհը։ Կապիտալիստական երկրներում, որոնք գտնվում են հետպատերազմյան հակասությունների և արտադրության կապիտալիստական անարխիայի ճանկերում, անընդհատ վատթարանում է աշխատավոր մասսաների դրությունը, աճում է գործազրկությունը, նվազում է աշխատավարձը, ուժեղանում ինֆլյացիան։ Դիտավորյալ կերպով նվազեցված պաշտոնական տվյալներով, ԱՄՆ-ում գործազուրկների թիվը արդեն կազմում է 3,2 միլիոն մարդ, իսկ մասնակի գործազուրկներինը՝ 10,2 միլիոն մարդ և գնալով ավելանում է։ Իտալիայում կա երեք միլիոն գործազուրկ, դա նշանակում է, որ տասը բանվորից երեքը չեն աշխատում։ Փոքրիկ Բելգիայում արդեն կա 300 հազար գործազուրկ։ Գերմանիայի օկուպացման արևմտյան գոտիներում կա ավելի քան 1,2 միլիոն գործազուրկ։ ԱՄՆ-ի քաղաքներում կատարված հետազոտության տվյալներով, 1948 թվին յուրաքանչյուր 7-ը մարդուց մեկը սովի էր մատնված։ Այդ նշանակում է, որ կա-

պիտալիստական աշխարհի ամենահարուստ երկրում 1947 թվին սովի էին մատնված միլիոնավոր մարդիկ։ Ֆերմերական բնակչության մոտ երկու երրորդ մասը չի կարողանում հասնել նորմալ կենսամակարդակի, իսկ 10 միլիոն գյուղական բնակչություն սուր կարիքի մեջ է։ 1949 թվին Տրումենի կողմից կոնգրեսին ուղղված ուղերձում նշված է, որ հինգ միլիոն ընտանիք մինչև այժմ էլ ապրում է որջերում, երեք միլիոն ընտանիք ապրում է օտարների հետ միևնույն հարկի տակ։ Առողջապահությունը շատ հետ է մնում բժշկական գիտության առաջադիմությունից։ Տրումենի ասելով, ԱՄՆ-ի բնակչությունը տառապում է չափազանց բարձր գներից»։

1949 թվի մայիսմեկյան տոնը ամբողջ աշխարհի աշխատավորները դիմավորում են դեմոկրատական և իմպերիալիստական լագերների միջև գնալով ուժեղացող պայքարի պայմաններում։

Իմպերիալիստական լագերը, որին գլխավորում է ԱՄՆ-ը, ձգտում է ամրապնդել կապիտալիզմը և նախապատրաստել համաշխարհային նոր պատերազմ։ ԱՄՆ-ի և Անգլիայի ղեկավար ռեակցիոն շրջանները երազում են համաշխարհային նոր պատե-



րազմի մասին, ձգտում են զավթել նոր գաղութներ, իրենց ենթարկել մյուս ժողովուրդներին։ Իրենց ավանտյուրիստական պլանների իրականացնելու համար անգլո-ամերիկյան իմպերիալիստները տենդորեն սպառազինվում են։ ԱՄՆ-ի 1948—1949 թ. թ. բյուջեով բանակին և նավատորմին հատկացված ծախսերը կազմում են ամբողջ բյուջեի 60 տոկոսը։ ԱՄՆ-ի հովանավորությամբ ստեղծվեց այսպես կոչված Արևմտյան դաշինքը, որի մեջ մտան Անգլիան, Ֆրանսիան, Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը։ Այդ դաշինքը անգլո-ամերիկյան ռազմական բլոկի գործիքն է Եվրոպայում։ Անգլիայի և Ամերիկայի կառավարողները եվրոպական մի շարք պետությունների հետ կնքեցին Հյուսիս-ատլանտյան պակտ, որը գլխավոր օղակն է ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն քաղաքականության մեջ և ուղղված է ՍՍՌՄ-ի դեմ։ Ներկայումս բանակցություններ են տեղի ունենում այսպես կոչված Միջերկրածովյան, Խաղաղօվկիանոսյան և այլ պակտեր կնքելու մասին, որոնց սուր ծայրն ուղղված է ՍՍՌՄ-ի դեմ։

ԱՄՆ-ը երկրագնդի բոլոր մասերում ստեղծել է ավելի քան 484 ռազմա-օդային և ռազմա-ծովային բազա։ Ամերիկյան իմպե-

րիալիստները, հիտլերականների նման, իրենց զավթողական քաղաքականությունը և իմպերիալիստական նոր պատերազմի նախապատրաստումը քողարկում են կոմունիստական վտանգի դեմ պայքարելու լոզունգով։ ԱՄՆ-ում ձերբակալում և դատում են կոմունիստներին, հրատարակում են ռեակցիոն օրենքներ, որոնք սահմանափակում են պրոֆմիությունների իրավունքները։ Կոմունիզմի դեմ պայքարելու դրոշակի տակ դաժանորեն հետապնդվում են պրոգրեսիվ կազմակերպությունները և նրանց գործիչները։ Կոմունիստ են հայտարարվում բոլոր նրանք, ովքեր պայքար են մղում խաղաղության համար։

Կապիտալիստական երկրներում դաժան հալածանքների են ենթարկվում գործադուլավոր բանվորները։ Ֆրանսիայում, հանքագործների վիթխարի գործադուլի ժամանակ ոստիկանությունը գործի դրեց զենք, տանկեր և արտասվաբեր գազեր։ Հունաստանում, Իսպանիայում, Պորտուգալիայում, Հնդկաստանում, Իրանում, Հարավ-Աֆրիկայի Միության մեջ, Եգիպտոսում, Բիրմայում, Արգենտինայում, Բրազիլիայում, Չիլիում, Լիբանանում, Կուբայում և կապիտալիստական մի շարք այլ երկրներում ռեակցիան խոր-



տակեց պրոֆմիութենական կազմակերպությունները և արյունալի տեռոր է գործադրում նրանց ղեկավարների դեմ։ Անգլիայի ներքին գործերի մինիստրը վերջերս հրատարակեց մի օրենք, որն արգելում է Լոնդոնում տոնել 1949 թվի մայիսի 1-ը։

Բոլոր երկրների իմպերիալիստները, դեմոկրատիայի և սոցիալիզմի դեմ մղվող իրենց պայքարում, հենվում են աջ սոցիալիստների վրա, որոնք ըստ էության հանդիսանում են բուրժուազիայի վարձու գործակալները բանվորական շարժման մեջ։

Սակայն իմպերիալիստական լագերի դեմ կանգնած է դեմոկրատական լագերը, որին գլխավորում է Սովետական Միությունը։ Դեմոկրատական լագերը անհամեմատ ավելի հզոր է, քան իմպերիալիստական լագերը։ Նա ընդգրկում է մի հսկայական տերիտորիա, որտեղ ապրում է 500—600 միլիոն մարդ, չհաշված այն երկրների ժողովուրդներին, որոնք համակրում են այդ լագերին։ Սովետական Միությունը աշխարհիս բոլոր երկրներում ունի միլիոնավոր հավատարիմ բարեկամներ հանձինս այն հասարակ մարդկանց, որոնք շահագրգռված են խաղաղությամբ և անվտանգությամբ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ

ռեոլուցիայի 31-րդ տարեդարձի առթիվ իր
տված զեկուցման մեջ ընկ. Մոլոտովն ա-
սել է. «Որքան ավելի աղմկեն նոր պատե-
րազմի պարոնայք հրձիգները, այնքան ավե-
լի նրանք հետ կմղեն իրենցից միլիոնավոր
հասարակ մարդկանց բոլոր երկրներում և
այնքան ավելի արագ տեղի կունենա այդ
պարոնների միջազգային մեկուսացումը։
Դրա հետ միաժամանակ խաղաղության և
դեմոկրատիայի կողմնակիցների միջազգա-
յին լագերը, որի ավանգարդումն է կանգ-
նած ՍՍՌՄ-ն, գնալով ավելի է ամրապընդ-
վում, դառնալով մեծ և անխորտակելի ուժ»։
Բանվոր դասակարգի պայքարում մեծ դեր
են խաղում նաև դեմոկրատական այնպիսի
կազմակերպություններ, ինչպիսիք են
Պրոֆմիությունների համաշխարհային ֆե-
դերացիան, որը միավորում է 66 միլիոն
կազմակերպված բանվորներ, Կանանց մի-
ջազգային դեմոկրատական ֆեդերացիան,
որն ընդգրկում է 56 երկիր և միավորում 50
միլիոն կին, Դեմոկրատական երիտասար-
դության Համաշխարհային ֆեդերացիան,
որն ընդգրկում է 63 երկիր և միավորում է
50 միլիոն մարդ։
Հսկայական ուժ են դարձել կոմպար-
տիաները։ Աշխարհիս բոլոր երկրներում



կոմունիստական պարտիաները հաջողու-
թյամբ հանդես են գալիս նոր պատերազմի
հրձիգների դեմ, գլխավորելով աշխատա-
վորների պայքարը։ Ֆրանսիայում հա-
մաշխարհային երկրորդ պատերազմից ա-
ռաջ կոմպարտիան իր շարքերում ու-
ներ 300 հազար անդամ, իսկ ներ-
կայումս ունի մոտ մեկ միլիոն անդամ։
Չեխոսլովակիայի կոմպարտիայի անդամնե-
րը կազմում են երկու միլիոն մարդ։ Բուլղա-
րական կոմպարտիայի շարքերում կա 500
հազար մարդ, իտալական կոմպարտիան իր
շարքերում ունի ավելի քան 2 միլիոն մարդ։
Չինաստանի կոմունիստների թիվը 1949
թվին երեք միլիոնից անցավ։
Անգլո-ամերիկյան բլոկի իմպերիալիս-
տական ձգտումներին Սովետական Միու-
թյունը հակադրում է կայուն դեմոկրատա-
կան խաղաղության համար, համաշխարհա-
յին նոր պատերազմի հրձիգների սանձա-
հարման համար պայքարելու պարզորոշ և
հստակ ծրագիր։
Ի պատասխան նոր պատերազմի հրձիգ-
ների աճած ակտիվության, խաղաղության
իսկական կողմնակիցները համախմբում են
իրենց ուժերը, որպեսզի բոլոր միջոցներով
խանգարեն և վիժեցնեն անգլո-ամերիկյան

իմպերիալիստների հանցավոր պլանները։ Կապիտալիստական երկրներում աշխատավորների մասսայական ցույցերը ցայտուն կերպով ապացուցում են, որ օրեց-օր աճում և բազմանում են հզոր դեմոկրատական բանակի շարքերը, ազատասեր այն ժողովուրդների ուժերը, որոնք հանդես են գալիս ամբողջ աշխարհի կայուն խաղաղության և անվտանգության համար մղվող պայքարի դրոշի տակ։

Որքան էլ մոլեգնեն նոր պատերազմի հրձիգները, նրանց չի հաջողվի հետ շրջել պատմության անիվը։ Պատասխանելով «Պրավդայի» թղթակցի հարցին, թե ինչով կարող է վերջանալ նոր պատերազմի հրձիգների քաղաքականությունը, ընկեր Ստալինն ասել է. «Դա կարող է վերջանալ միայն նոր պատերազմի հրձիգների խայտառակ տապալմամբ։ Չերչիլը, նոր պատերազմի այդ գլխավոր հրձիգը, արդեն հասել է այն բանին, որ զրկվել է իր ազգի և ամբողջ աշխարհի դեմոկրատական ուժերի վստահությունից։ Նույնպիսի ճակատագիր է սպասում պատերազմի մյուս բոլոր հրձիգներին։ Չափազանց կենդանի են ժողովուրդների հիշողության մեջ վերջին պատերազմի սարսափները և չափազանց մեծ են խաղաղու-



թյան կողմնակից հասարակական ուժերը, որպեսզի ագրեսիայի գծով Չերչիլի աշակերտները կարողանային դրանք հաղթահարել և շուռ տալ նոր պատերազմի կողմը»։

Ամբողջ աշխարհի ժողովուրդները մեծ հույսով են նայում հզոր սոցիալիստական տերությանը, որը հաստատապես պահապան է կանգնած ժողովուրդների խաղաղության, ազատության և անկախության գործին։

Մայիսի 1-ի օրը աշխարհիս բոլոր երկրների բանվորներն ու աշխատավորները ցույց կտան իրենց կամքը՝ վճռաբար պայքար մղելու հանուն կայուն խաղաղության, ժողովուրդների բարեկամության և միջազգային համագործակցության համար, դեմոկրատիայի և սոցիալիզմի հաղթանակի համար։

Տոնելով մայիսի 1-ը սովետական երկրի աշխատավորները նորից ցույց կտան իրենց վճռականությունը՝ առաջիկայում ևս ամրապնդելու մեր հայրենիքի հզորությունը, Լենին-Ստալինի պարտիայի դրոշի տակ և մեծ Ստալինի առաջնորդությամբ վստահ քայլերով առաջ կգնան դեպի կոմունիզմի հաղթանակը։

# ՀԱՂԹԱՆԱԿԻ ՕՐԸ

Աշխարհիս բոլոր մասերի բոլոր մարդկանց հիշողության մեջ անջնջելի կերպով տպավորվել է հիտլերյան Գերմանիայի դեմ ձեռք բերված հաղթանակի օրը՝ 1945 թվի մայիսի 9-ը։ Բոլորի շուրթերից, բոլոր լեզուներով հնչում էր հաղթական խոսքը, ամեն մեկը, ում համար թանկ էր մարդկային կյանքը, ուրախանում էր ֆաշիզմի պարտությամբ, արյունահեղ պատերազմի հաղթական վախճանով։ Հաղթանակը բոլորից ավելի, առավել անկեղծորեն տոնում էր հերոսական սովետական ժողովուրդը, որն իր ուսերի վրա էր կրել պատերազմի ծանրությունը և որը հանդիսացավ հիտլերյան Գերմանիան և իմպերիալիստական Ճապոնիան ջախջախող վճռական ուժը։ Հայրենական մեծ պատերազմը ցույց տվեց մեր պետական և հասարակական կարգի ամրությունը, այն հանդիսացավ մեր պարտիայի ճիշտ քաղաքականության մեծ փորձաքարը։

Ընկեր Ստալինը, ամփոփելով պատերազմի արդյունքները, ասել է.



«Մեր հաղթանակը նշանակում է, ամենից առաջ, որ հաղթեց մեր սովետական հասարակարգը, որ սովետական հասարակարգը հաջողությամբ բռնեց քննությունը պատերազմի կրակի մեջ և ապացուցեց իր լիակատար կենսունակությունը...

Մեր հաղթանակը նշանակում է, երկրորդ, որ հաղթեց մեր սովետական պետական կարգը, որ մեր սովետական բազմազգ պետությունը դիմացավ պատերազմի բոլոր փորձություններին և ապացուցեց իր կենսունակությունը...

Մեր հաղթանակը նշանակում է, երրորդ, որ հաղթեցին սովետական զինված ուժերը, հաղթեց մեր Կարմիր Բանակը, որ Կարմիր Բանակը հերոսաբար դիմացավ պատերազմի բոլոր ձախորդություններին, գլխովին ջախջախեց մեր թշնամիների բանակները և պատերազմից դուրս եկավ հաղթող»։

Համաշխարհային երկրորդ պատերազմում մեր ձեռք բերած հաղթանակի շնորհիվ, անչափ աճեցին Սովետական Միության միջազգային նշանակությունն ու հեղինակությունը։ Սովետական Միության շուրջը համախմբվեցին դեմոկրատական և առաջադեմ բոլոր ուժերը, որոնք ՍՍՌՄ-ի հետ միասին պայքար են մղում խաղաղության, դեմո-

կրատիայի և սոցիալիզմի համար։ Հայրենական Մեծ պատերազմը հաղթականորեն ավարտելուց հետո, սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ խաղաղ, ըստեղծարար աշխատանքի։ Մեծ Ստալինի հանճարեղ ցուցումներով, սովետական ժողովուրդը, բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, պայքար ծավալեց ժողովրդական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման հետպատերազմյան ստալինյան հնգամյակը իրականացնելու համար։

Մենք հաղթեցինք պատերազմում, մենք հաղթում ենք աշխատանքի ասպարեզում։ Սովետական Միության յուրաքանչյուր քաղաքացի պարծենում է մեր ամբողջ ժողովրդի աշխատանքային սխրագործություններով և մեր ժողովուրդը պարծենում է սոցիալիստական աշխատանքի պանծալի նորարարների սխրագործություններով։

Հետպատերազմյան հնգամյակի երրորդ տարվա կատարման արդյունքները ցույց են տալիս սովետական ժողովրդի նշանավոր հաջողությունները արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության և կուլտուրայի ասպարեզում։

Կոլխոզային գյուղացիությունը, իրակա-



նացնելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումը, 1948 թվին մեծ հաջողություններ ձեռք բերեց հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակելու, բերքատվությունը բարձրացնելու, հանրային անասնաբուծության մեջ անասունների գլխաքանակն ավելացնելու և նրանց մթերատվությունը բարձրացնելու ասպարեզում։ ՍՍՌՄ գյուղատնտեսությունը տարեց տարի ավելի ու ավելի է զինվում տեխնիկապես։ 1948 թվին գյուղատնտեսությունը ստացել է երեք անգամ ավելի տրակտոր, քան նախապատերազմյան ժամանակ։

1948 թվին գիտության և գյուտարարության ասպարեզում կատարված աչքի ընկնող աշխատությունների համար Ստալինյան մրցանակներ շնորհելու մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը վկայում է, թե ինչպիսի խոշոր քայլ է արել դեպի առաջ սովետական գիտությունը պարտիայի ղեկավարությամբ, ընկեր Ստալինի ցույց տըված ուղիով։

Կոմունիզմ կառուցելու ասպարեզում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները ոգեշնչում են նոր դեմոկրատիայի երկրների ժողովուրդներին և կապիտալիզմի





են հասցնում պատերազմի իմպերիալիստական հրձիգներին։

Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի, միջազգային ասպարեզում ՍՍՌՄ-ի աճած հեղինակության շնորհիվ, սրվեց կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամը, թուլացան կապիտալիզմի ուժերը և ամրապնդվեցին սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերը։ Համաշխարհային երկրորդ պատերազմում ձեռք բերված հաղթանակը պատմական հաղթանակ էր ոչ միայն սովետական ժողովրդի, այլև ամբողջ առաջադեմ մարդկության ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների համար։

Չափ ու սահման չուներ կապիտալիզմի երկրների հասարակ մարդկանց ուրախությունը պատերազմն ավարտվելուց հետո։ Նրանք ձգտում էին թոթափել պատերազմի բեռը և ապրել երկարատև խաղաղության պայմաններում։ Սակայն անգլո-ամերիկյան ռեակցիոն իմպերիալիստական շրջանները հաջորդ օրն իսկ սկսեցին զենք սրել համաշխարհային նոր պատերազմի համար։ Նրանք մի ձեռքով ստորագրեցին Պոտսդամի պայմանագիրը, իսկ մյուս ձեռքով՝ դրան արմատապես հակասող բազմաթիվ փաստաթղթ-



թեր։ Նրանք մի կողմից ստորագրեցին Միավորված Ազգերի Կազմակերպություն ստեղծելու արձանագրությունը և մյուս կողմից անց են կացնում Միավորված Ազգերի Կազմակերպության հիմքերը խարխլելու քաղաքականություն։

Ամերիկյան ռեակցիոներները կեղծորեն բարբաջում են ընդհանուր զինաթափման մասին, իսկ իրականում արտադրում են ատոմային ռումբեր, կառուցում են ռազմածովային և ռազմա-օդային բազաներ աշխարհիս բոլոր մասերում, տենդորեն միլիտարացնում են երկիրը և ավելացնում են ռազմական կարիքների վրա կատարվող ծախսերը։

ԱՄՆ-ի բյուջեում 1948—1949 թ. թ. ռազմական ծախսերը, համեմատած 1938—1939 թվի հետ, ավելացել են համարյա 15 անգամ։ Եվ այդ այն ժամանակ, երբ աշխարհիս ամենախաղաղասեր երկիրը՝ ՍՍՌՄ-ն, իրականացնելով ստալինյան հետպատերազմյան հնգամյակի հոյակապ պլանը, սոցիալ-կուլտուրական միջոցառումներին տարեց-տարի ավելի ու ավելի մեծ գումարներ է հատկացնում և 1949 թվի բյուջեում նախատեսել է 119,2 միլիարդ ռուբլի, այսինքն 12,9 տոկոսով ավելի, քան 1948 թվին։ Այդ հատ-

կացումների ընդհանուր գումարից միայն լուսավորության ծախսերը կազմում են ավելի քան 60 տոկոս։

Նոր պատերազմի անգլո-ամերիկյան հրձիգները թմբկահարում են, թե ցանկանում են ստեղծել կայուն խաղաղություն ու համագործակցություն բոլոր երկրների հետ, իսկ գործնականում Տրումենի դոկտրինան և «Մարշալլի պլանը» խարխլում են միջազգային հարցերի խաղաղ կարգավորման հիմքերը։ Իրականում ԱՄՆ-ի իմպերիալիստները համաշխարհային տիրապետություն հաստատելու տենդով բռնկված, ստեղծում են արևմտյան կապիտալիստական երկրների բլոկներ և դաշինքներ, որոնք ուղղված են Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։ Դրա ցայտուն ապացույցն է Հյուսիս-ատլանտյան պայմանագիրը և վերջերս պրեզիդենտ Տրումենի հրաժարվելը Սովետական Միության հետ խաղաղության պակտ կնքելուց։ Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող շրջանների ագրեսիվ արտաքին քաղաքականությունը, որն իր արտահայտությունը գտավ Հյուսիս-ատլանտյան պայմանագրում, զուգակցված է երկրում ռեակցիայի սանձարձակ խրախճանքի հետ։ Միլիտա-



րիստները հույս ունեն ավելի հարուստ ավար ձեռք բերելու, եթե նրանց հաջողվի ռազմական նոր աղետի մեջ ներգրավել աշխարհը։

Բայց որքան էլ մոլեգնի իմպերիալիստական բուրժուազիան, ինչպիսի դավեր էլ նյութի նա սոցիալիզմի և դեմոկրատիայի հարաճուն ուժերի դեմ, ինչպիսի սպառնալիքներ էլ ուղղի մեծ ՍՍՌՄ-ի աճող հեղինակության հասցեին, մեր երկիրը չի թեքվի իր պատմական ուղուց։ Նա ընթացել է, ընթանում է և կընթանա իր սեփական ճանապարհով դեպի կոմունիզմ։

Խաղաղության ուժերը բավականաչափ մեծ են նոր պատերազմի հրձիգների ոճրագործ պլաններին խանգարելու համար։ Անգլո-ամերիկյան իմպերիալիստները հակումն ունեն գերագնահատելու իրենց ուժերը և թերագնահատելու պատերազմի դեմ մարտնչողների ուժերը։ Սովետական Միության ժողովուրդները իմպերիալիստների ոչ մի սպառնալիքից չեն վախենում։ Նրանք վստահ քայլերով առաջ են գնում, հերոսաբար աշխատում են ստալինյան նոր հնգամյա պլանի իրականացման վրա, բազմապատկում են իրենց սոցիալիստական Հայրենիքի տնտեսական հզորությունը։

Մոսկվայի արդյունաբերական ձեռնարկությունների պանծալի կոլեկտիվների հայրենասիրական նախաձեռնությունն ընդգրկեց մեր ամբողջ երկիրը։ «Փարիզի կոմունա» կոշիկի ֆաբրիկայի բրիգադիր Մատրոսովի, «Կալիբր» գործարանի վարպետ Ռոսսիյսկու և արտադրանքի գերազանց որակի հայտնի վարպետ Ալեքսանդր Չուտկիխի օրինակով, ամբողջ երկրի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պայքարում են աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, գերպլանային սոցիալիստական կուտակումներն ավելացնելու, թողարկվող արտադրանքի որակը բարելավելու համար։

Կոլխոզային գյուղացիությունը Սովետական Միության բոլոր ծայրերից դիմում է ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինին, պարտավորություն ստանձնելով՝ է՛լ ավելի բարձրացնել գյուղատնտեսությունը։

Հայկական ՍՍՌ աշխատավորները, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեր երկրի բոլոր ժողովուրդների հետ միասին, մտնելով սոցիալիստական մրցության մեջ, պայքար են մղում հետպատերազմյան ստալինյան հնգամյակը կատարելու համար։ Հազարավոր ստախանովականներ կատարել



և գերակատարել են իրենց հնգամյա պլանները։ Մեր ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկությունները՝ Ս. Մ. Կիրովի անվան գործարանը, Ցեմենտի գործարանը և սրանց նման շատ շատերը հնգամյա պլանները կատարել են 1950 թվի արտադրության մակարդակի գծով։

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը, հաջողությամբ ավարտելով 1948 թվի գյուղատնտեսական տարին, ամենայն խնամքով պատրաստվեց նոր, 1949 թվի գյուղատնտեսական աշխատանքներին։

Մայիսի 9-ի Հաղթանակի Օրը մեր ժողովուրդն ամեն տարի դիմավորում է նորանոր հիանալի նվաճումներով։ Այս տարի ևս սովետական ժողովուրդը խոշոր նվաճումներով դիմավորելով Հաղթանակի Օրը, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, մեծ Ստալինի առաջնորդությամբ, վստահ քայլերով ընթանում է դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները։

Գ. ԴԱԼԼԱՔՅԱՆ

# ՆՈՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Գիտության և գյուտարարության, գրականության և արվեստի 1948 թվի աչքի ընկնող աշխատությունների համար ստալինյան մրցանակներ շնորհելու մասին ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի որոշման մեջ գրված է. երրորդ աստիճանի մրցանակ տալ. «Ալեքսանդր Ստեփանովիչ Չուտկիխին՝ Կրասնոխոլմի Մահուդի կոմբինատի վարպետի օգնական,— տեքստիլ արդյունաբերության մեջ աշխատանքի բարձր արտադրողական ռացիոնալ մեթոդներ արմատավորելու համար, որոնք ապահովում են գերազանց որակի արտադրանքի թողարկում և լայն տարածում են գտել ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում»։

Միայն մեր երկրում շարքային մարդը կարող է արժանանալ այդպիսի մեծ փառքի ու պատվի, միայն մեր երկրում շարքային մարդու անունով սկիզբ է առնում հայրենասիրական ամբողջ շարժում։ Այդպես սկսվեց ստախանովյան շարժումը, այդպես սկսվեցին Մատրոսովի, Իվանովի, Ռոսսիյսկու, Բորտկևիչի անվան հետ կապված նոր շարժումները, այդպես սկսվեց այժմ ամբողջ



երկրով մեկ ծավալվող չուտկիխական շարժումը՝ գերազանց որակի արտադրանքի համար։ Սովետական հայրենասիրությամբ տոգորված յուրաքանչյուր նախաձեռնություն մի նոր աստիճանի է բարձրացնում սոցիալիստական մրցությունը։

Նորը սոցիալիստական մրցության մեջ առանձնապես վառ կերպով է դրսևորվում հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար մղվող համաժողովրդական պայքարում։ Այժմ մրցությունը գնալով ավելի լայն թափ ու ծավալ է ստանում և խորը կերպով թափանցում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Այդ է մրցության ներկա շրջանի բնորոշ կողմը։

Սոցիալիստական մրցության մասսայականությունը չի սահմանափակվում ցեխով, գործարանով, ֆաբրիկայով, այն դուրս է գալիս ավելի լայն ասպարեզ։ Ահա թե ինչու որտեղ էլ որ սկիզբ առնի նորը սոցիալիստական մրցության մեջ, մեր լայնածավալ երկրի որ մասում էլ հանդես գա նա, դառնում է բոլորի սեփականությունը, դառնում է համաժողովրդական։ Այս տեսակետից տիպական է Թբիլիսիի Կիրովի անվան դազգահաշինական գործարանի և Երևանի Ջեր-

ժինսկու անվան Դազգահաշինական գործարանի ստախանովականների միջև վերջերս ստեղծված կապը։ Արմատավորելով Լենինգրադի Սվերդլովի անվան գործարանի խառատ, այժմ Ստալինյան մրցանակի լաուրեատ Հենրիխ Բորտկևիչի մեթոդը, երկու եղբայրական ռեսպուբլիկաների մայրաքաղաքների մի խումբ արագագործ-ստախանովականներ նամակագրության միջոցով փորձի փոխանակություն են կատարում։ Ձերժինսկու անվան գործարանի պարտկազմակերպությունը այդ մրցությանը տվեց մասսայական բնույթ և ոտքի հանեց ամբողջ կոլեկտիվին՝ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։ Պարտբյուրոյի առաջադրանքով ագիտատորները ամեն օր մասսայականացնում են դազգահաշինարարների մրցության ընթացքը և կազմակերպում, որ դրան մասնակցեն ավելի շատ թվով բանվորներ։ Անվանի խառատ Գրիգոր Սեմերջյանը, որ արդեն կատարել է ինը տարվա նորմա, մրցման մեջ մտնելով Սադիկո Բենդիանաշվիլու հետ, պարտավորվել է այս տարի կատարել երեք և կես տարվա նորմա և տալ միայն գերազանց որակի արտադրանք։ Թբիլիսիցիների հետ մրցության մեջ են մտել նաև ստախանովական արագա-



գործներ Տիրան Թումիկյանը, Սոկրատ Հաբությոմյանը և ուրիշներ։

Նորը սոցիալիստական մրցության մեջ, առաջավոր փորձի փոխանակումը լավ է դրսևորվում նաև Լենինական-Քութայիսի-Կիրովաբադ մրցության մեջ։ Եղբայրական երեք ռեսպուբլիկաների երեք քաղաքների պարտիական, սովետական աշխատողները, արտադրության մարդիկ, կենդանի կապի միջոցով, հաճախակի միմյանց այցելելով սովորում են մեկը մյուսից և հասնում ավելի մեծ հաջողությունների։

Վերջերս Հայաստան ժամանեց Լենինգրադի «Պրոլետարսկայա պոբեդա» ֆաբրիկայի բրիգադան և մանրամասն ծանոթացավ հատկապես կոշիկի արտադրության հետ։

— Հայաստանում արտադրվող առաջին տեսակի կոշիկները,— ասաց Հայկական ՍՍՌ Թեթև արդյունաբերության մինիստրության կոլեգիայի նիստում բրիգադայի ղեկավար ընկ. Վ. Աբրամովը,— իրենց որակով չեն զիջում Մոսկվայի և Լենինգրադի կոշիկի ֆաբրիկաների արտադրանքին։ Խնդիրն այն է, որ Ալեքսանդր Չուտկիխի օրինակով պայքար ծավալվի միայն գերազանց որակի արտադրանքի համար։

Երևանի Մահուդի ֆաբրիկան Զուտկիխի նախաձեռնության լայն կիրառման շնորհիվ ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանը կատարեց 106,4 տոկոսով և խոշոր չափով բարելավեց որակական ցուցանիշները։ Զուտկիխական 22 բրիգադաներից 5-ը տալիս են բացառապես գերազանց որակի արտադրանք, իսկ մնացած 17 բրիգադաները՝ 98-ից 99,8 տոկոս առաջին տեսակի արտադրանք ։

Ալեքսանդր Զուտկիխին ջերմորեն են արձագանքում Երևանի կարբիդագործներ.ը, մեքենաշինարարները, Լենինականի տեքստիլագործները, երկաթուղայինները, Ղափանի հանքագործները, Ալավերդու պղնձաձուլողները, Կիրովականի քիմիագործները։

Ինչո՞վ բացատրել Զուտկիխի նախաձեռնության այդպիսի արագ տարածումը. Նրանով, որ այն հանդիսանում է այն նորը սոցիալիստական մրցության մեջ, այն առաջադիմականը, որը խոշոր խթան է հանդիսանում ստալինյան նոր հնգամյակը սեղմ ժամկետում և որակական բարձր ցուցանիշներով կատարելու համար։

Սոցիալիստական գյուղատնտեսության մարդիկ նույնպես ջերմորեն են արձագանքում ստալինյան մրցանակի լաուրեատ



Զուտկիխին։ Երկրի հազարավոր մեքենատրակտորային կայաններում տրակտորիստները, արձագանքելով Զուտկիխին, պարտավորություն են ստանձնել հանում բարձր բերքի կատարել միայն գերազանց որակի վար։

Մեր երկրում վերանում է ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած տարբերությունը, վերանում է գյուղի և քաղաքի միջև տարբերությունը։ Քաղաքի նորն անմիջապես մուտք է գործում գյուղ և դառնում կոլխոզային աշխատավորության սեփականությունը։

Վերջերս թերթերում հրապարակվեց մի հետաքրքրական ինֆորմացիա. Կրասնոդարի երկրամասի Միխայլովսկայա ստանիցայի անվանի տրակտորիստ Իվան Շացկու հրավերով օրերս նրանց հյուր եկավ Ալեքսանդր Զուտկիխը։ Շացկին նրան կայարանից ուղիղ տարավ դաշտակայանը և ծանոթացրեց, թե ինչպես է իր բրիգադան պայքարում բարձր բերքի համար։ Այդ միջոցին Միխայլովսկայայի ՄՏ կայանի դիրեկտոր Ն. Ջեմյանկովը ստանիցայից ուրախ լուր բերեց, որ Ալեքսանդր Զուտկիխին շնորհված է Ստալինյան մրցանակ։

Իվան Շացկին, տրակտորիստները և կոլխոզնիկուհիները ջերմորեն շնորհավորեցին

Չուտկիխին։ Նույն օրը տեղի ունեցավ դաշտային աշխատանքների գերազանց որակի մրցության մեջ մտած օղակավարների և բրիգադիրների խորհրդակցություն, որտեղ Իվան Շացկին և Ալեքսանդր Չուտկիխը պատմեցին գերազանց որակի համար պայքար կազմակերպելու փորձի մասին։ Ալեքսանդր Չուտկիխը Իվան Շացկուն առաջարկեց մրցության մեջ մտնել գերազանց որակի համար։ Իվան Շացկին ընդունեց մրցահրավերը։ Ամբողջ երկիրը հետևում է Չուտկիխի և Շացկու մրցությանը, արդյունաբերության և գյուղատնտեսության երկու նորարարների մրցությանը։

Չուտկիխին արձագանքում են նաև Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Էջմիածնի, Աշտարակի, Վեդու, Բասարգեչարի, Արտաշատի և մեր ռեսպուբլիկայի մյուս շրջանների տրակտորիստները։

Գյուղի և քաղաքի ագիտատորների խնդիրն է՝ սիստեմատիկաբար մասսայականացնել այն նորը, որ կա սոցիալիստական մրցության մեջ թե գյուղում և թե քաղաքում։ Այդ տեսակետից խրախուսանքի է արժանի Լենինականի Չկալովի անվան Կարի ֆաբրիկայի և Ախուրյանի շրջանի Ղարիբջանյան գյուղի կոլխոզի միջև սկսված սոցիալիստա-



կան մրցությունը, որի նախաձեռնողները հանդիսացան Լենինականի Քաղաքային և Մխուրյանի շրջանային թերթերի խմբագրությունները։ Գործարանի մարդիկ, գնալով գյուղ, պարտավորություններ են ստանձնել սեղմ ժամկետում և բարձր որակով կատարել հնգամյա պլանը, աշխատավորությանը տալ գերազանց որակի հագուստ, խնայողաբար ծախսել հումքը, էլեկտրական էներգիան, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և դրանով ավելի շատ օգուտ տալ պետությանը, ժողովրդին։ Գյուղի մարդիկ, գնալով ֆաբրիկա, պարտավորություն են ստանձնել սովետական առաջավոր ագրոտեխնիկայի կիրառմամբ այս տարի նվաճել բարձր բերք և դրանով ավելի օգուտ տալ պետությանը, ժողովրդին։ Այսպիսի մրցություն է ծավալվել Լենինականի բոլոր գործարանների, ֆաբրիկաների և Ախուրյանի շրջանի կոլխոզների միջև։

Այս է նորն ու առանձնահատուկը, կոմունիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը, պետության և ժողովրդի շահերը։ Այսպիսի և շատ ուրիշ բազմազան ձևերով ու բովանդակությամբ է դրսավորվում սոցիալիստական մրցությունը արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ։

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

## ԿՈԼԽՈԶՆԻԿՆԵՐԻ ԱԶՆԻՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՏՈՒՂՆԵՐԸ

Ընկեր Ստալինը հարվածային կոլխոզնիկների Առաջին համագումարում նշելով կոլխոզային կարգերի ամրապնդման և հետագա զարգացման ուղիները, ասաց.

«Որպեսզի կոլխոզնիկներն ունևոր դառնան, այժմ դրա համար միայն մի բան է պահանջվում. աշխատել կոլխոզի մեջ ազնվորեն, ճիշտ օգտագործել տրակտորներն ու մեքենաները, ճիշտ օգտագործել բանող անասուններին, ճիշտ մշակել հողը, պահպանել կոլխոզային սեփականությունը»։

Մեծ առաջնորդի այս ցուցումները աշխատանքի, ունևոր ու կուլտուրական կյանք ստեղծելու ծրագիր հանդիսացան Սովետական Միության կոլխոզային գյուղացիության համար։ Այդ ցուցումների անշեղ կենսագործման շնորհիվ հիմնովին վերափոխվեց կոլխոզային գյուղի դեմքը— կոլխոզներն ամրապնդվեցին տնտեսապես և կազմակերպչորեն, կոլխոզնիկների համար ստեղծվեց ապահով, գնալով ավելի ու ավելի բարեկեցիկ դարձող կյանք։



Ընկեր Ստալինի իմաստուն ցուցումների անշեղ կենսագործմամբ ունևոր կյանքի ուղին դուրս եկան և նրանով հաստատ քայլերով առաջ են ընթանում նաև մեր ռեսպուբլիկայի Արտաշատի շրջանի կոլխոզնիկները։ Իրենց ապահով և ունևոր կյանքի գրավականը տեսնելով կոլխոզային կարգերի ամրապընդման մեջ, կոլխոզնիկները անձնվիրաբար և ազնվորեն աշխատում են հանրային ունեցվածքը, կոլխոզային բարիքները բազմապատկելու ,այն պահպանելու համար։

Շրջանի կոլխոզների եկամուտի հիմնական աղբյուրները հանդիսանում են խաղողագործությունը և բամբակագործությունը։ Այդ կուլտուրաների ճիշտ մշակման, ագրոկանոնների լրիվ կիրառման շնորհիվ շրջանի կոլխոզները տարեց տարի բարձրացրին հողերի ու այգիների բերքատվությունը, ավելացրին իրենց եկամուտները։ Պատվով կատարելով ընկեր Ստալինին տված խոստումը և իրենց վերցրած պարտավորությունները, շրջանի կոլխոզներն անցած տարի միայն խաղողից ու մրգերից ստացան 40 միլիոն 342 հազար ռուբլի եկամուտ, իսկ բամբակենու պլանտացիաներից ստացված եկամուտը կազմեց 11 միլիոն 576 հազար ռուբլի։ Կոլխոզների միայն դրամական եկամուտները

կազմեցին 57,3 միլիոն ռուբլի։ Աշխօրի միջին արժեքը հասավ 23 ռուբլու։ Հարազատ պետությանը պլանից դուրս բամբակի հումք տալու համար շրջանի կոլխոզները, որպես պարգև-հավելում, ստացան 3 միլիոն 742 հազար ռուբլի, իսկ պլանից դուրս հանձնած խաղողի դիմաց մեկ միլիոն 34.000 ռուբլի։

Տարեց-տարի ավելանում է շրջանի միլիոնատեր կոլխոզների թիվը։ Այժմ շրջանում կան 24 միլիոնատեր կոլխոզներ, իսկ դրանցից մի քանիսի եկամուտները հասել են արդեն 6 և նույնիսկ 7 միլիոն ռուբլու։

Ահա Դարղալու գյուղի Փարիզյան կոմունայի անվան շքանշանակիր կոլխոզը։ Անցյալ տարի նրա եկամուտները հասան 7 միլիոն ռուբլու, իսկ անբաժանելի դրամագլուխը՝ 922 հազար ռուբլու։ Կոլխոզում աշխօրի արժեքը կազմեց 51 ռուբլի, յուրաքանչյուր աշխօրի դիմաց բաշխվեց 4 կիլոգրամ հացահատիկ, 3 կիլոգրամ խաղող, կես լիտր գինի, մեկ կիլոգրամ շամիչ, 0,5 կգ. փշատ, 36 ռուբլի դրամ և այլ մթերքներ։ Ահա այդ գյուղի կոլխոզնիկներից մեկի՝ Գրիգոր Պետրոսյանի եկամուտները։ Պետրոսյանի ընտանիքը իր վաստակած 1050 աշխօրի դիմաց ստացավ 262 փութ հացահատիկ, 225 փութ խաղող, 65 փութ շամիչ, 30 փութ փշատ,



40 հազար ռուբլի դրամ և գյուղատնտեսական այլ մթերքներ։

Ազնիվ ու նվիրված աշխատանքով տարեց տարի ավելի ունևոր ու բարեկեցիկ կյանք են ստեղծում նաև Վերին Արտաշատ գյուղի կոլխոզնիկները։ Անցյալ տարի նրանք նույնպես պատվով կատարեցին ընկեր Ստալինին տված խոստումը և կոլխոզի բամբակի դաշտերի յուրաքանչյուր հեկտարից ստացան 30,5 ցենտներ միջին բերք։ Կոլխոզի եկամուտները նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ կրկնապատկվել են և հասել 6,5 միլիոն ռուբլու։ Այդ կոլխոզի անդամներից Պողոս Աղասարյանը, իր ընտանիքի հետ միասին 1948 թվին վաստակեց 1450 աշխօր, որի դիմաց ստացավ 56 հազար ռուբ. կանխիկ դրամ, չորս և կես տոննա հացահատիկ, երեք տոննա խաղող, 725 կիլոգրամ շամիչ, 320 լիտր օղի, 40 կիլոգրամ մեղր, բացի այդ՝ յուղ, պանիր և այլ մթերքներ։

Գնալով ավելի ու ավելի են ջնջվում հին, կավե հյուղակների կույտ հանդիսացող գյուղի հետքերը։ Պետության օժանդակությամբ նախագծվում և հիմնովին վերակառուցվում են շրջանի գյուղերը, կոլխոզից ստացած ա-

ւատ եկամուտներով կոլխոզնիկները կառուցում են նոր, երկհարկանի բարեկարգ տներ, գեղեցիկ ակումբներ, կոլխոզային ու հասարակական բազմաթիվ շենքեր։

Ահա այդ նույն Դարղալու գյուղը։ Կոլխոզի կառուցած գեղեցիկ ու ընդարձակ ակումբը դարձել է կոլխոզնիկների կուլտուրական հանգստի սիրելի վայրը։ Ակումբի հարուստ գրադարանում նրանք կարդում են ցանկացած գրքերը, թերթերը և ժուռնալները։ Ակումբի դահլիճում հաճախակի ելույթներ են ունենում շրջանային թատրոնի, ինչպես նաև ռեսպուբլիկայի գեղարվեստական խմբերը, արվեստի անվանի վարպետները, կոլխոզի ինքնագործ խմբակները։ Ակումբն ունի իր ստացիոնար կինոն։

Այդպիսի գեղեցիկ ու հարմար ակումբներ են կառուցել շրջանի 26 կոլխոզներ։ Այդ ակումբներից 12-ն ունեն ստացիոնար կինոներ։ Շուտով իրենց սեփական ակումբները կունենան նաև մյուս կոլխոզները։

Կոլխոզնիկների կենցաղում հաստատ մուտք են գործել էլեկտրականությունն ու ռադիոն։ Ներքին Դվին գյուղում, օրինակ, 48 կոլխոզնիկներ ունեն ռադիոընդունիչներ, իսկ 220 կոլխոզնիկների բնակարաններում դրված են ռադիոբարձրախոսներ։ Եվ այսպես գնա-



լով ավելի ու ավելի է վերանում կոլխոզային գյուղի և քաղաքի միջև եղած տարբերությունը։

Շրջանի կոլխոզնիկները որոշել են 1949 թիվը դարձնել է՛լ ավելի բարձր բերքի, ավելի ունևոր ու կուլտուրական կյանքի տարի։ Սոցիալիստական մրցության մեջ մտնելով Հոկտեմբերյանի շրջանի կոլխոզների հետ, մեր կոլխոզները պարտավորվել են 2500 հեկտար բամբակի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստանալ 25 ցենտներ միջին բերք, իսկ 3700 հեկտար խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից 70 ցենտներ բերք։

Կոլխոզնիկների մեջ տիրող աշխատանքային բուռն խանդավառությունը, լայնորեն ծավալված սոցիալիստական մրցությունը երաշխիք են այն բանի, որ Արտաշատի շրջանի կոլխոզային գյուղացիությունը, ազնիվ ու նվիրված աշխատանքով, պատվով կկատարի նաև այս պարտավորությունը և մի նոր քայլ կանի դեպի պայծառ ապագան՝ դեպի կոմունիզմ։

Վ. ՍՄԲԱՏՅԱՆ

ՀԿ(բ)Պ Արտաշատի շրջկոմի քարտուղար

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

## ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ

(Թվեր և փաստեր)

*Ստալինյան նոր հնգամյա պլանի համաձայն Հայկական ՍՍՌ Թեթև արդյունաբերության մինիստրության գծով արդեն կառուցվել և շահագործման են հանձնվել մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, որոնցից են.*

### ՏՐԻԿՈՏԱԺԻ ՆՈՐ ՖԱԲՐԻԿԱՆԵՐ

*1947 թվին Կիրովականում գործարկվեց նոր հնգամյակի ռեսպուբլիկայի խոշոր նորակառույցներից մեկը՝ տրիկոտաժի ֆաբրիկան, որն արտադրելու է տղամարդու, կանացի, սպորտային և երեխայի 20 տեսակ տրիկոտաժյա սպիտակեղեն։ Ֆաբրիկան ամբողջովին կահավորված է սովետական լավագույն ավտոմատ մեքենաներով։ Այս տարի ֆաբրիկան տալու է 750 հազար կտոր սպիտակեղեն։ Ըստ հնգամյա պլանի նրա*



*կարողությունը 1950 թվին պետք է հասնի 2 միլիոն 300 հազար կտորի. եկող տարի ֆաբրիկան կհասնի այդ կարողությանը։*

*Եկող տարվանից ֆաբրիկան, մեր ռեսպուբլիկայում առաջին անգամ, կսկսի արտադրել տաք սպիտակեղեն։*

***

*1948 թվին Գորիսի շրջանում շահագործման հանձնվեց տրիկոտաժի նոր ֆաբրիկան. լեռնային Գորիսում այդ առաջին արդյունաբերական խոշոր ձեռնարկությունն է։ Ֆաբրիկան արտադրելու է տրիկոտաժյա սպիտակեղեն։ Այս տարի նա արդեն կտա 250 հազար հատ սպիտակեղեն՝ ինչպես Գորիսի, այնպես և մոտակա շրջանների ազգաբնակչության համար։*

***

*Ստալինյան նոր հնգամյակի անցած երեք տարիների ընթացքում անճանաչելիորեն փոխվեց ու վերակառուցվեց Բերիայի շրջանի Ստալինի անվան Տրիկոտաժի ֆաբրիկան, այն կահավորվեց մեծ քանակությամբ նորագույն մեքենաներով։ Ֆաբրիկան արդեն այս տարի պետք է տա մեկ միլիոն 200 հազար կտոր տրիկոտաժյա սպիտակեղեն, այդ թվում 160 հազար կտոր մետաքսյա սպիտակեղեն։ Այսպիսով մեր ռեսպուբլի-*

կայում հիմք է դրվում մետաքսյա տրիկոտաժեղենի արտադրությանը։

Ֆաբրիկան արտադրում է նաև տրիկոտաժյա վերնազգեստ։ Անցյալ տարվանից նա սկսեց արտադրել նաև բրդյա վերնազգեստ.

## ՄԱՀՈՒԴԻ ՖԱԲՐԻԿԱ

1947 թվին շահագործման հանձնվեց Երևանի Մահուդի ֆաբրիկան. այսպիսով մեր ռեսպուբլիկայում հիմք դրվեց մահուդի արտադրությանը։ Ֆաբրիկան գնալով ավելացնում է իր ասորտիմենտը, տալիս է ավելի բարձրորակ արտադրանք։ Այժմ ֆաբրիկան արտադրում է տարբեր գույների դրապ՝ կանանցի վերարկուների համար և մահուդ։ Այս տարվանից կսկսվի շևյոտի արտադրությունը՝ տղամարդու կոստյումի համար։

Արդեն մի քանի ամիս է, ինչ մեր խանութներում առատորեն վաճառվում են դպրոցական երեխաների մահուդյա կոստյումներ. դրանք կարված են Երևանի Մահուդի ֆաբրիկայի արտադրած մահուդից։

Ըստ հնգամյա պլանի ֆաբրիկան 1950 թվին պետք է տա 400 հազար մետր արտադրանք. Ֆաբրիկայի կոլեկտիվի նվիրված աշխատանքի շնորհիվ ֆաբրիկան արտադրանքի այդ մակարդակին կհասնի և այն զգալի չափով կգերազանցի այս տարի։



## ՀԱՅՏԵՔՍՏԻԼԴԵՏԱԼ ԳՈՐԾԱՐԱՆ

Մեր ռեսպուբլիկայում լայնորեն զարգացող տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունները մեծ պահանջ են զգում մեքենաների պահեստի մասերի։ Այդ պահանջը բավարարելու համար հնգամյակի անցած երեք տարիներում կառուցվեց և շահագործման հանձնվեց Երևանի Հայտեքստիլդետալ գործարանը։ Այժմ նա ռեսպուբլիկայի տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններին լրիվ չափով բավարարում է մեքենաների պահեստի մասերով։ Բացի այդ, գործարանը վերջերս պատրաստեց մետաքսի արդյունաբերության համար հենող մեքենայի առաջին նմուշը։

## ԲԱՄԲԱԿԱԶՏԻՉ ԳՈՐԾԱՐԱՆ

Ստալինյան նոր հնգամյակի նորակառույցներից է նաև Արտաշատի Բամբակազտիչ գործարանը, որը կառուցվեց շատ սեղմ ժամկետում՝ ընդամենը մեկ տարում։ Գործարանը լրիվ չափով կահավորված է սովետական նորագույն մեքենաներով, նա վերամշակման է ենթարկում Արտաշատի և մոտակա բամբակացան շրջանների բամբակի ամբողջ բերքը։

Հնգամյակի անցած երեք տարիների ըն-

թացքում խոշոր չափով ընդարձակվել, վերակառուցվել և մեծացրել են իրենց կարողությունները նաև ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության մի շարք հին արդյունաբերական ձեռնարկություններ։ Այսպես օրինակ.

## ՄԵՏԱՔՍԻ ՖԱԲՐԻԿԱՆ

Նոր հնգամյակի սկզբում Բերիայի շրջանի այս ֆաբրիկան մի փոքրիկ արդյունաբերական ձեռնարկություն էր, որը տալիս էր միայն մեկ տեսակի արտադրանք՝ պապլին և այն էլ կիսամշակ վիճակում։ Հնգամյակի անցած երեք տարիների ընթացքում ավելի քան երկու անգամ ավելացավ ֆաբրիկայի գործող դազգահների քանակը, կառուցվեցին վերամշակման, ներկման բաժիններ և այլ օժանդակ ցեխեր։

Այժմ մեր խանութներում կարելի է գտնել ֆաբրիկայի արտադրած բազմագույն գեղեցիկ կտորեղեն՝ կրեպդեշին, մարկիզետ, կաշեմիր, սարժա և մետաքսյա այլ բարձրորակ կտորներ։

Եթե հնգամյակի սկզբում ֆաբրիկան տարեկան տալիս էր ընդամենը 350 հազար մետր արտադրանք, ապա այս տարի նա արտադրելու է մեկ միլիոն մետր մետաքսյա կտորեղեն։



## ԿԱՇՎԻ ԳՈՐԾԱՐԱՆԸ

1947—1948 թվերի ընթացքում հիմնովին վերակառուցվեց Երևանի կաշվի գործարանը, լրիվ չափով մեքենայացվեցին մեծ աշխատանք պահանջող պրոցեսները, որի շնորհիվ դեռ անցյալ տարի արտադրանքի մակարդակի տեսակետից նա հասավ 1950 թվի մակարդակին։

Մեծ չափով լավացել է գործարանի արտադրանքի որակը։ Այժմ գործարանն սկսել է արտադրել նաև բարձրարժեք կաշիներ լաք, վելյուր և ամրացված շեվրետ։

## ԿՈՇԻԿԻ ՖԱԲՐԻԿԱՆԵՐԸ

Այս տարի կավարտվի Լենինականի կոշիկի ֆաբրիկայի հիմնական վերակառուցումը և լրիվ մեքենայացումը։ Այնտեղ դրվում է 2 կոնվեյեր, որի շնորհիվ զգալի չափով կբարձրանա բանվորների աշխատանքի արտադրողականությունը։ Այս տարի առաջին կոնվեյերը կդրվի նաև Երևանի կոշիկի № 1 ֆաբրիկայում։ Այս վերակառուցումների և մեքենայացման շնորհիվ մինիստրության կոշիկի ֆաբրիկաներն արդեն այս տարի կտան 600 հազար զույգ կոշիկ, այսինքն այնքան, ինչքան ըստ հնգամյա պլանի նրանք պետք է տային 1950 թվականին։

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

«Ագիտատորի գրադարանի» սերիայով լույս տեսած այս բրոշյուրում տրված է բոլշևիկյան մամուլի դերն ու նշանակությունը մասսայական քաղաքական ագիտացիայի մեջ, ագիտատորի կողմից թերթի միջոցով աշխատելու ձևերն ու մեթոդները։

Քաղաքական ագիտացիայի կարևորագույն միջոցը թերթն է։ Մոսկվայի պարտիական կազմակերպության ակտիվին «ՌԿ(բ)Պ 14-րդ կոնֆերանսի աշխատանքների արդյունքների առթիվ» տված զեկուցման մեջ 1925 թվականի մայիսի 9-ին ընկեր Ստալինն առանձնապես նշում էր թերթերը մասսաների մեջ տարածելու կարևորությունը, թերթերում հրապարակված կարևորագույն նյութերը աշխատավորության մեջ ժողովրդականացնելու անհրաժեշտությունը։

Աշխատավոր մասսաների շրջանում ագիտացիոն աշխատանք կատարելիս թերթն օգտագործելու հիմնական ձևերն են՝ թերթերի բարձրաձայն ընթերցանությունը, թերթերի զրույց-տեսությունները և լրագրական ցուցափեղկերը։ Բրոշյուրում հանգամանորեն



ցույց է տրված, թե ինչ նպատակ են հետապնդում քաղաքական ագիտացիոն աշխատանքում թերթի միջոցով աշխատելու այս կամ այն ձևերը, ցույց է տրված նրանց մեթոդները։ Քաղաքական ագիտացիայի ամենատարածված ձևերից մեկն է թերթերի բարձրաձայն ընթերցանությունը, որի կազմակերպումը նպատակ է հետապնդում ունկնդիրների գիտակցությանը հասցնել թերթի այն հիմնական նյութերի բովանդակությունը, որ նվիրված է սովետական հայրենիքի առջև կանգնած քաղաքական և տնտեսական խնդիրներին, ներքին և միջազգային կյանքի կարևոր իրադարձություններին։

Ամեն մի ագիտատոր պետք է ձգտի թերթում տպագրված նյութերից ընտրելու այնպիսի հոդվածներ և թղթակցություններ ընթերցանության համար, որոնք արտացոլեն կարևորագույն տնտեսական-քաղաքական խնդիրներ և համապատասխանեն ունկնդիրների պատրաստականության մակարդակին ու նրանց պահանջներին։ Ընթերցված նյութի առթիվ ագիտատորը սպառիչ ու ճիշտ պետք է պատասխանի ունկնդիրների կողմից առաջադրված հարցերին։ Ընթերցանությունից հետո պետք է կազմակերպել զրույց

կարդացված նյութի շուրջը, այն սերտորեն շաղկապել օրվա հրատապ հարցերի հետ։

Ագիտացիոն աշխատանքում թերթի օգտագործման մյուս ձևերից է թերթի գրույց-տեսությունը, որի նպատակն է թերթի ընթացիկ համարում, կամ մի քանի համարներում հրապարակված հիմնական հոդվածների, թղթակցությունների, հեռագրերի բնութագրման միջոցով ունկնդիրներին ծանոթացնել ներքին և միջազգային կյանքի առավել նշանավոր իրադարձություններին։

Թերթերի բարձրաձայն ընթերցանություն և գրույց-տեսություններ կազմակերպելու հետ միաժամանակ, պետք է ձեռնարկություններում, սովխոզներում ստեղծել լրագրական ցուցափեղկեր (վիտրինա)։ Պետք է օգտագործել ագիտացիոն աշխատանքում նաև թերթերից կտրված սյունակների տախտակը։

Թերթերի միջոցով ագիտատորի աշխատանքը լրջորեն նպաստում է պարտիայի և մասսաների անխորտակելի կապի հետագա է՛լ ավելի ընդարձակմանն ու ամրացմանը։

---



# ԹԵՄԱ, ՊԼԱՆ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ԸՆԴՈՒՆԱԾ «ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ՈՒ ՍՈՎԽՈԶԱՅԻՆ ՀԱՆՐԱՅԻՆ ՄԹԵՐԱՏՈՒ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՌԱՄՅԱ ՊԼԱՆԸ (1949—1951 Թ. Թ.)»:

1. Հացահատիկային տնտեսության մեծ վերելքը պայմաններ ստեղծեց գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի, ամենից առաջ անասնաբուծության հաջող զարգացման համար։

2. Անասնաբուծության զարգացումը առաջնակարգ նշանակություն ունի բնակչության պարենամթերք, իսկ թեթև արդյունաբերությանը հումք մատակարարելու համար։

3. Ներկայումս ամբողջ հասակով ծառացել է անասնաբուծությունն ամեն կերպ զարգացնելու խնդիրը, որպես գյուղատնտեսության զարգացման ասպարեզում պարտիայի ու պետության կենտրոնական խնդիրը։

4. Եռամյա պլանի կենսագործումով ամենակարճ ժամանակում կապահովվի անասունների գլխաքանա-

կի և մթերատվության այնպիսի աճ, որ հնարավորություն կտա 1951 թվին, 1948 թվի համեմատությամբ, ոչ պակաս քան մեկ ու կես անգամ ավելացնելու մսի, ճարպի, կաթի, յուղի, ձվի և մյուս մթերքների արտադրությունը։

5. Անասունների գլխաքանակի արագ աճման և մթերատվության բարձրացման գլխավոր նախապայմանն է հանդիսանում կերի ամուր բազայի ստեղծումը։

6. Եռամյա պլանի առաջադրանքները կատարելու գործում բացառիկ մեծ նշանակություն ունի կերերի մթերումը մեքենայացնելը, կոլխոզների և սովխոզների անասնապահական ֆերմաներում աշխատանքի աշխատատար պրոցեսների մեքենայացումը։

7. Պայքարելով անասունների գլխաքանակն ավելացնելու և մթերատվությունը բարձրացնելու համար, վերջ տալով արտադրության միակողմանի զարգացմանը, սովխոզները կդառնան առաջատար տնտեսություններ անասնաբուծության որակական բարելավման գործում։

8. Անասնապահության առողջ վերելքը հնարավոր է միայն անասունների գլխաքանակի աճը անասունների մասսայական որակական բարելավման և նրա մթերատվության բարձրացման հետ ճիշտ զուգորդելով։

9. Յուրաքանչյուր անասնապահական ֆերմայում բոլշևիկյան ամուր կարգ ու կանոնի հաստատումը,



անասնապահական կադրերը միչուրինյան գիտությունը տիրապետած, իրենց գործին անձնվիրաբար նվիրված բարձրորակ հազարավոր նորանոր վարպետներով լրացնելը անասունների գլխաքանակի աճման և նրանց մթերատվության բարձրացման առաջադրանքի կատարման գրավականն են։

10. Հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը վառ կերպով վկայում է պարտիայի, կառավարության, ընկեր Ստալինի անդուլ հոգատարությունը սովետական ժողովրդի բարեկեցության հետագա աճման նկատմամբ։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Կոլխոզային ու սովխոզային հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանը (1949—1950 թ. թ.)»։ «Սովետական Հայաստան» 1949 թ. ապրիլի 21։

«Գյուղատնտեսության զարգացման կենտրոնական խնդիրը»։ «Պրավդայի» առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.» 1949 թ. ապրիլի 20-ի համարում։

ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ 1949—1951 թ. թ. անասնաբուծության ասպարեզում բարձր ցուցանիշներ ձեռք բերելու համար գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին։ «Ս. Հ.» 22 ապրիլի 1949 թ.։

## ՈՒՂՂՈՒՄ

«Ագիտատորի բլոկնոտի» № 7-ի 37-րդ էջի ներքևից 3-րդ տողը կարդալ «... ավելի քան 500 հազար անգամ» և ոչ ինչպես տեքստում է։


Պատ. խմբագրի տեղակալ՝ ԳՈՒՐԳ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

ՎՖ 01283 Պատվեր № 346 Տիրաժ 8.500

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 8 1949 г.